Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 7 ԱՊՐԻԼ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78։*






# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԵԾ ՈՒԺԸ

### (Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 87-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

*Սովետական հասարակությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծագույն սիրով ու ջերմությամբ են նշում մեծահանճար Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 87-ամյակը, որը լրանում է 1957 թվականի ապրիլի 22-ին։ Մարքսիստական գիտության կորիֆեյ և ռևոլյուցիոն պրակտիկայի տիտան Վ. Ի. Լենինը Կոմունիստական պարտիայի ստեղծողն է, Սովետական պետության հիմնադիրը, միջազգային պրոլետարիատի հանճարեղ առաջնորդը։ Նա իր վիթխարի գործունեությամբ նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Վ. Ի. Լենինի անունը ամենայն իրավամբ դարձել է «նոր աշխարհի սիմվոլը արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս»,*

— ստված է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի դիմումի մեջ՝ առաջնորդի մահվան առթիվ։

Պրոլետարիատի մեծ ուսուցիչներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը ստեղծեցին գիտական սոցիալիզմը։ Նրանք ցույց տվին կապիտալիզմի կործանման անխուսափելիությունը և կոմունիզմի հաղթանակի պատմական անհրաժեշտությունը, բացահայտեցին պրոլետարիատի համաշխարհային պատմական դերը և մատնանշեցին այն ռևոլյուցիոն ուղին, որով պետք է ազատագրվեն բոլոր երկրների աշխատավոր մասսաները։ Մարքսը և Էնգելսը իրենց ողջ կյանքը նվիրեցին պրոլետարիատի ազատագրման մեծ գործին, և չնայած նրանց չվիճակվեց տեսնել կապիտալիզմի կործանումը, բայց և այնպես նրանք խորը հավատով էին լցված դեպի պրոլետարիատի հաղթանակը։

Պատմական հանգամանքների բերումով միջազգային բանվորական շարժման զարգացման գործում բացառիկ կարևոր տեղ գրավեց Ռուսաստանը, որին արդեն անցյալ դարի 80-ական թվականներից Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը դիտում էին որպես «ռևոլյուցիոն շարժման առաջավոր ջոկատ» Եվրոպայում։ Դրանով նրանք գիտականորեն կանխատեսեցին, որ Ռուսաստանը կդառնա ռևոլյուցիոն



շարժման կենտրոնը, ուր և կծաղկի մարքսիզմի իդեոլոգիան։ Եվ իրոք, հենց Ռուսաստանում էր, որ իր ռևոլյուցիոն գործունեությունը սկսեց Մարքսի և Էնգելսի գործի արժանավոր ու հանճարեղ շարունակող Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Վ. Ի. Լենինի պատմական մեծագույն ծառայությունը կայանում է նրանում, որ նա ոչ միայն զարգացրեց ու մի նոր, ավելի բարձր աստիճանի հասցրեց մարքսիզմը, այլև անմիջականորեն գլխավորելով այդ ուսմունքի իրականացման համար մղվող պայքարը՝ այն պսակեց մեծագույն հաղթանակով։ Մարքս-լենինյան գիտությունը մարդկային հասարակական մտքի զարգացման բարձրագույն նվաճումն է, որը պատմական կարճ ժամանակամիջոցում տիրապետեց մասսաներին և հասավ փայլուն հաղթանակների։ Նա կյանքի կոչեց Սովետական մեծ Միությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները և այժմ ոգեշնչում է կապիտալիստական երկրների աշխատավոր մասսաներին՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Արդեն 19-րդ դարի վերջերից Լենինը պայքար ծավալեց այն պարտիայի ստեղծման համար, որ պետք է կյանքում իրականաց-

ներ մարքսիզմը։ Լենինիզմը ուսուցանում է, որ պրոլետարիատի ուժը նրա կազմակերպվածության մեջ է, իսկ կազմակերպության բարձրագույն ձևը պարտիան է։ Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ պրոլետարական ռևոլյուցիան դարձավ անմիջական պրակտիկայի հարց և ռևոլյուցիոն շարժման կենտրոնը տեղափոխվեց Ռուսաստան, այդպիսի պարտիայի ստեղծումը դարձավ կենսական անհրաժեշտություն։ Ամենայն ուժով ընդգծելով այդ հանգամանքը՝ Լենինն ասաց. «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն — և մենք շուռ կտանք Ռուսաստանը»։ Լենինը նկատի ուներ ստեղծել նոր տիպի, մարքսիստական-ռևոլյուցիոն պարտիա՝ ի հակադրություն հին տիպի, Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստական պարտիաների։

Ահա թե ինչու Լենինի գործունեության կենտրոնակետը դարձավ մարքսիստական պարտիայի ստեղծումը։ Բացառապես նրան է պատկանում այդ պարտիայի կառուցման հանճարեղ պլանը, որը և իրականացվեց կյանքում։ ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը, որը դարձավ շրջադարձային կետ միջազգային բանվորական շարժման մեջ, ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի սկիզբը



դրեց. «Բոլշևիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական պարտիա, գոյություն ունի 1903 թվականից»։ Հենց սկզբից բոլշևիզմի օրրանի մոտ կանգնած էր Վ. Ի. Լենինը՝ նրա հիմնադիրը և առաջնորդը։

Կոմունիստական պարտիայի ուժը ժողովրդական մասսաների հետ ունեցած անխախտ կապի մեջ է։ Դա բխում է մարքսիզմ-լենինիզմի հանրահայտ դրույթից, որ պատմության կերտողը ժողովուրդն է։ Նա է ստեղծում նյութական ու կուլտուրական բարիքները, առաջ շարժում պատմությունը։ Լենինն ընդգծել է, որ ոչ մի պրոլետարական պարտիա չի կարող լուրջ հաջողությունների հասնել առանց ժողովրդական լայն մասսաների աջակցության ու վստահության։ Բոլշևիկյան պարտիան ծնվեց աշխատավոր ժողովրդի ծոցից, հանդիսացավ նրա ամենառևոլյուցիոն դասակարգի՝ պրոլետարիատի ավանգարդը, բոլոր աշխատավորների քաղաքական ղեկավարը. Նրա համար աշխատավոր ժողովրդի շահը դարձավ բարձրագույն օրենք և իր ողջ գործունեության ընթացքում ղեկավարվեց այդ սկզբունքով։ Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը ելնում է հասարակության զարգաց-

ման օրենքների իմացությունից և արտահայտում է պրոլետարիատի ու աշխատավոր մասսաների կենսական շահերը։

Լենինի ստեղծած ու ղեկավարած բոլշևիկյան պարտիայի անմիջական խնդիրն էր՝ մասսաներին կազմակերպել ու առաջնորդել դեպի ցարիզմի ու կապիտալիզմի կործանումը։ Պարտիան զինված մարքսիզմ-լենինիզմի գիտությամբ՝ իր ուղին լուսավորում էր սոցիալիստական ռևոլյուցիայի նոր թեորիայով։ Լենինը հանդես գալով որպես ռևոլյուցիոն մտքի հանճար, բոլոր երկրների մարքսիստների մեջ առաջինը գիտականորեն ուսումնասիրեց իմպերիալիզմի դարաշրջանը և ցույց տվեց, որ իմպերիալիզմը նեխող կապիտալիզմն է, պրոլետարական ռևոլյուցիայի նախօրյակը։ Նա հայտնագործելով կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը՝ հանգեց մի երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության եզրակացությանը, որը ոչ միայն առաջ մղեց մարքսիզմը, այլև ռևոլյուցիոն գործունեության որոշակի հեռանկար տվեց բոլոր երկրների պրոլետարներին։

Ղեկավարվելով այդ թեորիայով՝ բոլշևիկյան պարտիան Լենինի գլխավորությամբ



1917 թվականին ապահովեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը։ Մեծ Հոկտեմբերով, լենինիզմի զորեղ լուսարձակի տակ, սկսվեց մարդկության պատմության նոր դարագլուխը՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դարագլուխը։ Լենինը դարձավ նոր աշխարհի՝ կոմունիստական հասարակարգի ստեղծման սիմվոլը։

Լենինի անգնահատելի ծառայությունը նաև այն է, որ նա ռուսական փորձի գիտական ընդհանրացման հիման վրա ցույց տվեց, որ Ռուսաստանում պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն քաղաքական ձևը Սովետների ռեսպուբլիկան է։ Այդ խոշորագույն հայտնագործությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին մասսաներին լցրեց անհուն եռանդով դեպի մեծագույն նպատակը՝ Սովետների իշխանությունը։ Ռևոլյուցիայի հաղթանակից հետո լիովին հաստատվեց Լենինի այն խորիմաստ միտքը, որ պրոլետարիատի դիկտատուրան, Սովետների իշխանությունը դեմոկրատիայի բարձրագույն ձևն է և ամենակենսունակ հասարակարգը։ Այդ ապացուցվեց ոչ միայն խաղաղ շինարարության տարիներին, այլև Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ, երբ Սովետական Միությունը փայլուն հաղ-

թանակ տարավ ֆաշիզմի դեմ։ Սովետական հասարակական-պետական կարգը ապացուցեց իր գերազանցությունն ու առավելությունը բուրժուական պետությունների նկատմամբ։

Վ. Ի. Լենինը միաժամանակ ընդգծել է, որ պրոլետարիատի դիկտատուրան, որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի քաղաքական իշխանություն, կարող է ունենալ զանազան ձևեր։ Այդ գիտական կանխատեսությունը նույնպես հաստատվեց կյանքով՝ հանձին ժողովրդական դեմոկրատիայի իշխանության, որն այժմ կատարում է պրոլետարիատի դիկտատուրայի ֆունկցիաներ, հանդիսանում է նրա ձևերից մեկը։

Սովետական պետությունը լենինիզմի իդեաների մարմնավորումն է։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ այն դարձել է սոցիալիզմի-կոմունիզմի կառուցման հիմնական գործիքը և խաղաղության ու դեմոկրատիայի պատվարն ամբողջ աշխարհում։

Լենինը ոչ միայն ռևոլյուցիոն պայքարի մեծագույն ստրատեգ էր, այլև սոցիալիստական հասարակարգի իսկական կերտող։ Նա Սովետական պետության հիմնադիրն է, ա-



ռաջին Սովետական կառավարության ղեկավարը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո Լենինը որպես պետական մեծ գործիչ գլխավորեց Սովետական պետական շինարարության գործը, իսկ 1918—20 թվականներին՝ մեր հերոս ժողովրդի անձնուրաց պայքարը օտարերկրյա ինտերվենտների ու ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ։ Լենինը հանդես եկավ նաև որպես ռազմական գործի մեծագույն տեսաբան ու պրակտիկ, Սովետական պետության պաշտպանության կազմակերպիչ։

Խաղաղ շինարարության տարիներին Վ. Ի. Լենինը մշակեց մեր երկրի սոցիալիստական վերակառուցման ուղիները, առաջ քաշեց երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոոպերացման և կուլտուրական ռևոլյուցիայի վեհ ծրագիրը։ Կոմունիստական պարտիան, սովետական ժողովուրդը կենսագործեցին այն և պատմական ամենակարճ ժամանակամիջոցում վերացվեց մեր երկրի դարավոր հետամնացությունը, հաղթանակեց սոցիալիզմը։ Կազմավորվեցին սովետական հասարակության նոր շարժիչ ուժեր— սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը և սովետական ջերմ հայրենա-

սիրությունը։ Այդ բոլորի հետևանքով մեր Հայրենիքը թռիչք կատարեց և նախկին հետամնաց երկրից վերածվեց առաջավոր էկոնոմիկայի և կուլտուրայի երկրի։ Այդ թռիչքը լենինիզմի փայլուն հաղթանակն էր, նրա տրիումֆը։

Լենինը հիմնավորեց մեր երկրում ոչ միայն սոցիալիզմ, այլև կոմունիզմ կառուցելու անհրաժեշտությունն ու հնարավորությունը։ Նա կոմունիզմի կառուցման համար խոշոր նշանակություն էր տալիս երկրի էլեկտրիֆիկացմանը, որի տակ հասկացվում է ողջ ժողովրդական տնտեսության մեքենայացումը։ Ահա թե ինչու Լենինն ասում էր. «Կոմունիզմը՝ դա սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։ Առաջնորդի այդ ցուցումը բացառիկ նշանակություն ունի այժմ, երբ մենք սոցիալիզմից աստիճանաբար անցում ենք կատարում դեպի կոմունիզմ։ Պայքարը ՍՍՌՄ զարգացման 6-րդ հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար, խոշոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը, ատոմային էներգիայի օգտագործումը խաղաղ շինարարության նպատակով՝ լենինիզմի իդեաների կենսագործման նոր պերճախոս վկայություններն են։ Ժողովրդական լայն մասսա-



ները մեր երկրում ծավալել են կոմունիստական վիթխարի շինարարություն։

Անցած ժամանակաշրջանում մենք ձեռք ենք բերել վիթխարի հաջողություններ։ Բավական է հիշատակել, որ ՍՍՌՄ արդյունաբերական համախառն արտադրանքը նախառևոլյուցիոն ժամանակի համեմատությամբ աճել է ավելի քան 30 անգամ, իսկ ծանր ինդուստրիան՝ 50 անգամ, ընդ որում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը՝ 180 անգամ և էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 100 անգամ։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ կատարում ու գերակատարում է 6-րդ հնգամյա պլանի խնդիրները։ 1956 թվականին արդյունաբերության արտադրանքի ծավալը, 1955 թվականի համեմատությամբ, աճեց 11 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 11,4 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը՝ 9,4 տոկոսով։ Այստեղ նորից ցայտուն կերպով դրսևորվում է սոցիալիստական տնտեսության զարգացման լենինյան գիծը՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման անհրաժեշտությունը, որպես գլխավոր նախապայման ամբողջ ժողովրդական տնտեսու-

թյան արագ առաջխաղացման և սոցիալիստական ընդլայնված վերարտադրության կազմակերպման համար։ 1956 թվականին մեր երկիրն արտադրեց 48,6 միլիոն տոննա պողպատ, 429 միլիոն տոննա ածուխ, 83,8 միլիոն տոննա նավթ, 192 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Անշեղորեն առաջ է գնում նաև գյուղատնտեսությունը։ Հացահատիկի համախառն արտադրանքը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճել է 20 տոկոսով և երկիրը մթերել է մեկ միլիարդ փութ ավելի հաց։ Արագ թափով զարգանում է տեխնիկական կուլտուրաների մշակույթը, անընդհատ աճում է անասնաբուծությունը։

Այդ բոլորի հետևանքով սիստեմատիկաբար մեծանում է մեր երկրի ազգային եկամուտը և բարձրանում ժողովրդական մասսաների կենսամակարդակը։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հետևողականորեն իրականացնում են Վ. Ի. Լենինի ցուցումը՝ ամեն ինչ ժողովրդի համար, նրա ազատ ու երջանիկ կյանքի համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումները, ինչպես նաև ՍՍՌՄ Գերագույն Սովետի 6-րդ սեսիան հա-



տուկ ուշադրություն դարձրին տնտեսության ղեկավարությունն արմատապես բարելավելու և մեր բոլոր միջոցներն ու հնարավորությունները մոբիլիզացնելու վրա։ Պահանջվում է էկոնոմիկայում ևս անշեղորեն կիրառել լենինյան դրույթը դեմոկրատական ցենտրալիզմի մասին, որը պահպանելով արտադրության կենտրոնացված ղեկավարության սկզբունքը, ամեն կերպ խրախուսում է տեղական նախաձեռնությունը։ Դրան համապատասխան էլ Փետրվարյան պլենումը խնդիր դրեց արդյունաբերության և շինարարության օպերատիվ կառավարման ծանրության կենտրոնը փոխադրել տեղերը՝ բուն տնտեսական կենտրոններն ու շրջանները։ Այժմ համաժողովրդական լայն քննարկման են ենթարկվում արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման թեզիսները, որոնք պահանջում են հետևողականորեն կիրառել լենինյան դրույթները տնտեսության ղեկավարման մեջ։ Այս միջոցառումներն զգալիորեն ընդարձակում են սովետական ռեսպուբլիկաների իրավունքները և հանդիսանում նոր ավանդ մեր երկրի հետագա ամրապնդման ու հզորացման գործում։

*1957 թ. ժողովրդա-տնտեսական պլանն ու պետական բյուջեն նախատեսում են ՍՍՌՄ զարգացման արագ տեմպեր, ընդ որում մեր էկոնոմիկայի ձեռք բերած ընդհանուր հաջողությունների հիման վրա լայն թափ են ընդունում սոցիալ-տնտեսական և կուլտուրական միջոցառումները, ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, բնակարանային շինարարությունը, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և այլն։*

*Կոմունիստական շինարարությունը պահանջում է որքան հնարավոր է կարճ ժամանակամիջոցում լուծել ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը, այսինքն մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով հասնել ու անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից։ Սովետական ժողովուրդը հաստատակամորեն գնում է հենց այդ ուղիով և աշխարհում չտեսնված տեմպերով։ Բավական է հիշատակել, որ բնակչության մեկ շնչին ընկնող եկամտի չափով մեր երկրի ազգային եկամուտը 1913 թվականից մինչև 1956 թվականը ավելացել է 13 անգամ, այն ժամանակ երբ ԱՄՆ-ում 2 անգամ էլ չի աճել։*

*Կոմունիզմի կառուցումը մեր երկրում պահանջում է ոչ միայն արտադրողական ուժերի բարձր մակարդակ, այլև կուլտուրայի մեծ*



*հարստություն, այն հաշվով, որ գիտության նվաճումները լայնորեն արմատավորվեն արտադրության մեջ և սովետական մարդիկ լինեն բազմակողմանիորեն զարգացած։ Կոմունիստական պարտիայի ուշադրության կենտրոնում է մասսաների կոմունիստական դաստիարակությունը, որի համար անփոխարինելի նշանակություն ունեն մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը։ Վ. Ի. Լենինի աշխատությունները դարձել են սովետական մարդկանց սեղանի գիրքը։*

*ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները խոշոր դեր են կատարում մեր կադրերի մարքս-լենինյան պատրաստականության բարձրացման գործում։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1956 թվականի հունիսի 30-ի որոշումը՝ «Անհատի պաշտամունքի և նրա հետևանքների հաղթահարման մասին» նոր լիցք հաղորդեց սովետական մարդկանց ստեղծագործական վերելքին։ Հասարակական կյանքի բոլոր բնագավառներում անշեղորեն վերականգնվում ու կիրառվում են պարտիական ու պետական շինարարության լենինյան նորմաները, որպես մեր հետագա առաջխաղացման գլխավոր երաշխիք։*

*Կոմունիստական պարտիայի բեղմնավոր*

աշխատանքի շնորհիվ մարքսիզմ-լենինիզմը մեր երկրում դարձել է համաժողովրդական գաղափարախոսություն։ Միաժամանակ պահանջվում է անհաշտ պայքար մղել թշնամական իդեոլոգիայի բոլոր դրսևորումների դեմ, արմատախիլ անել կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ։ Այդպիսի մնացուկներից են նացիոնալիզմի արտահայտությունները, որոնք պետք է վճռականորեն դատապարտվեն, որպես մեր իդեոլոգիային խորթ երևույթներ։

Լենինիզմի գաղափարների կենսահաստատ ուժը ցայտուն կերպով դրսևորվեց նաև Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության մեջ։ Վ. Ի. Լենինը հանդիսացավ ազգային հարցի մարքսիստական թեորիայի ու ռեվոլյուցիոն ծրագրի մշակողը։ Հոկտեմբերյան ռեվոլյուցիան արմատականորեն լուծեց ազգային հարցը և մեր երկրի բոլոր ժողովուրդները դարձան ազատ ու իրավահավասար։ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ ստեղծվեց ՍՍՌՄ-ը, որպես մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդների միասնական ու կամավոր ընտանիք։ Սովետական բոլոր ժողովուրդները ձեռք բերեցին քաղաքական, տնտեսական և կուլտուրական զարգացման լայն իրավունքներ ու հնարա-



վորություններ և կարճ ժամանակամիջոցում հասան մեծագույն հաջողությունների։

Աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծող Վ. Ի. Լենինը անդադրում պայքարում էր բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման համար։ Նա այդ դաշինքի մեջ տեսնում էր պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը։

Այժմ Կոմունիստական պարտիան սրբությամբ է կատարում մեծ Լենինի պատգամները և հետևողականորեն ամրապնդում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Կենսագործելով Պարտիայի XX համագումարի որոշումները, մեր երկրում վիթխարի աշխատանք է կատարվում գյուղատնտեսության հետագա վերելքի ուղղությամբ։ Սոցիալիստական քաղաքը մեծ օգնություն է ցույց տալիս կոլտնտեսային գյուղին թե՛ մեքենաներով և թե՛ կադրերով։ Կարճ ժամկետում խոպան հողերի յուրացման շրջաններն ուղարկվեցին հազարավոր տրակտորներ և բազմաթիվ այլ մեքենաներ։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի կոչով խոպան ու խամ հողերի յուրացման վայրերը մեկնեցին 350 հազար սովետական հայրենասերներ, որոնք ցուցաբերեցին կոմունիզ-

մի կառուցողներին արժանի աշխատանքային արիություն։

Զինված լենինիզմի մեծ գաղափարներով սովետական ժողովուրդը շատ դժվարություններ ու խոչընդոտներ հաղթահարեց սոցիալիզմի կառուցման ճանապարհին։ Բայց մեր երկրի հերոսական բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը, առաջավոր ինտելիգենցիան, ոգեշնչվելով և ղեկավարվելով լենինյան Կոմունիստական պարտիայի կողմից, չնահանջեցին այդ դժվարությունների ու խոչընդոտների հանդեպ, կարողացան դրանք հաղթահարել շահագործող դասակարգերի, մենշևիկների, էսեռների, տրոցկիստների, բուխարինականների, բուրժուական նացիոնալիստների և սոցիալիզմի այլ թշնամիների դեմ մղված դաժան պայքարում։

Պատմական շատ կարճ ժամկետում սովետական ժողովուրդը իրականացրեց երկրի սոցիալիստական ինդուստրացումը, լուծեց իշխանությունը վերցնելուց հետո պրոլետարական ռևոլյուցիայի ամենադժվարին խնդիրը՝ գյուղատնտեսության կոլեկտիվացումը։

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում իր ազգային վերածնունդն է ապրում նաև հայ ժողովուրդը։ Ցարական



կայսրության երբեմնի հետամնաց ծայրամաս Հայաստանը, որը դաշնակցության տիրապետության ժամանակ բոլորովին ավերվեց և դարձավ մահվան ու որբերի երկիր, ռուս ժողովրդի օգնությամբ ազատագրվեց հարստահարողների լծից, և այժմ դարձել է մեր երկրի առաջավոր, ինդուստրիալ ռեսպուբլիկաներից մեկը։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956 թվականին 45 անգամ գերազանցեց նախառևոլյուցիոն՝ 1913 թվականի մակարդակը։ Հայաստանի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ կատարում է 6-րդ հնգամյա պլանով ռեսպուբլիկայի համար նախատեսված առաջադրանքները։ Արդյունաբերական արտադրանքի 1956 թվականի պլանը կատարվեց 104 տոկոսով և 1955 թվականի համեմատությամբ աճեց 10 տոկոսով։ Հատկապես արագ են զարգանում մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական և քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան։ Անընդհատ աճում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, որոշակի են հաջողությունները գյուղատնտեսության ասպարեզում և այլն։ 1956 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելի մթերվեց ու գնվեց

միս՝ 9 տոկոսով, կաթ՝ 12 տոկոսով, բանջարեղեն՝ 35 տոկոսով, խաղող՝ 89 տոկոսով։ Աննախընթաց է Սովետական Հայաստանի կուլտուրական զարգացումը։ Անընդհատ ընդարձակվում է դպրոցների, լուսավորական ու բուժական հիմնարկների ցանցը։



Սովետական ժողովուրդը հպարտ է, որ առաջինը սոցիալիզմի ուղին հարթեց մարդկության համար և ամբողջ աշխարհի բանվորների ու գյուղացիների սրտերը վառեց ազատության անմար կրակով։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո մարդկության պատմության առավել նշանակալից պատմական իրադարձությունը Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների ազատագրումն է իմպերիալիզմի լծից։ Այժմ աշխարհում կազմավորվել է օրեցօր հզորացող սոցիալիզմի համաշխարհային սիստեմ և այն դարձել է խաղաղության ու ժողովուրդների անվտանգության անխորտակելի ամրոցը։ Կասկած չկա, որ ապագան պատկանում է այդ սիստեմին և ինչպես ընդգծել է Լենինը, սոցիալիզմի-կոմունիզմի լիակատար ու վերջնական հաղթանակն ամբողջ աշխարհում՝ աներկբայելի է։



Սովետական պետությունը և ժողովրդական դեմոկրատիայի երկրները հետևողականորեն իրականացնում են խաղաղասիրական քաղաքականություն։ Լենինը բազմիցս մատնանշել է տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորությունը։ Դեռ 1920 թվականին նա գրում էր. «Թող ամերիկյան կապիտալիստները մեզ չդիպչեն։ Մենք նրանց չենք դիպչի»։ Սակայն իմպերիալիստներին ձեռնտու չէ խաղաղությունը, և նրանք ոտնակոխ անելով ժողովուրդների ազատությունն ու անկախությունը՝ հրահրում են ագրեսիվ, թալանչիական պատերազմներ։ Այդ ձևով նրանք հարձակում գործեցին Եգիպտոսի վրա, արյունալից պատերազմ են մղում Ալժիրի ժողովրդի դեմ, անողոք դատաստան են տեսնում Կիպրոսի հայրենասերների հետ, օկուպացրել են չինական Տայվան կղզին և այլն։

Իմպերիալիզմի լենինյան բնութագիրը իր ցայտուն հաստատումն է գտնում ԱՄՆ-ում, որը դարձել է միջազգային ռեակցիայի գլխավոր պատվարը և կազմակերպում է ագրեսիվ բլոկներ, հրահրում պատերազմներ։ Դրան են ծառայում ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն, Բաղդադի պակտը և այլն։ Վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը հանդես եկավ նոր

դոկտրինայով», որը ոչ այլ ինչ է, եթե ոչ Մերձավոր ու Միջին Արևելքի ժողովուրդների ստրկացման ու կեղեքման պլան։ Բայց աշխարհում չկա և ոչ մի ուժ, որ կարողանար ետ շարժել պատմության անիվը։

Միջազգային իմպերիալիզմի դեմ կանգնած է սոցիալիզմի ու դեմոկրատիայի հզոր ճակատը, որը վճռականորեն ու բոլոր հնարավոր միջոցներով պայքարում է կայուն ու երկարատև խաղաղության համար։ Աշխարհում խաղաղության գոտին գնալով աճում ու ամրապնդվում է։ Բացի սոցիալիստական երկրներից նրա մեջ են մտնում նաև այնպիսի պետություններ, ինչպիսին են Հնդկաստանը, Ինդոնեզիան, Աֆղանստանը, Եգիպտոսը, Բիրման, Սիրիան և այլն։ Վերջապես ծավալվում է խաղաղության կողմնակիցների մեծ շարժումը, որն ընդգրկում է ամբողջ աշխարհի աշխատավոր բնակչությանն ու առաջավոր ինտելիգենցիային։ Սովետական Միության առաջարկները՝ սպառազինությունները կրճատելու և միջազգային բարդ հարցերը բանակցությունների միջոցով լուծելու մասին՝ լայն արձագանք են գտնում աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդների մեջ։

Խաղաղության հզոր շարժումը գլխավորում



են կոմունիստները։ 1922 թվականին Վլադիմիր Իլյիչը, խոսելով կապիտալիստական երկրներում կոմունիստական պարտիաների ստեղծման անհրաժեշտության մասին, գրում էր. «Այդ ամենից դժվարն է, բայց և ամենից կարևոր գործն է»։ Անցած ժամանակաշրջանում լուծվեց այդ դժվարին խնդիրը և այժմ բոլոր երկրներում կան կոմունիստական պարտիաներ, որոնք վայելում են աշխատավոր մասսաների սերն ու աջակցությունը։ Բոլոր ազնիվ ու առաջավոր մարդիկ իրենց արժանի տեղը գտնում են Կոմունիստական պարտիայի շարքերում։ Համաշխարհային հռչակ ունեցող ֆրանսիական ականավոր գիտնական Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին Կոմունիստական պարտիայի մեջ մտավ ֆաշիստական օկուպացիայի ժամանակ, և այժմ գլխավորում է խաղաղության կողմնակիցների Համաշխարհային խորհուրդը։ Երբ անվանի նկարիչ Պիկասսոյին հարցրին, թե ինչու է մտել Կոմունիստական պարտիայի մեջ, նա պատասխանեց. ես գնացել եմ դեպի կոմունիստական պարտիան այնպես, ինչպես պապակվողը նետվում է դեպի աղբյուրը։ Այդպես, միջազգային կոմունիստական շարժումը՝ զինված մարքսիզմ-լենինիզմի թեո-

րիայով՝ ուժ ու կենսունակություն է տալիս միլիոնավոր մարդկանց։

Ամեն մի փորձ թուլացնել կոմունիստական պարտիաների մարտունակությունը միայն վնաս է հասցնում պրոլետարիատի ու աշխատավոր մասսաների գործին։ Ահա թե ինչու եղբայրական կոմպարտիաները, բոլշևիզմի օրինակով, իրենց շարքերն ամրապնդում են օպորտունիզմի դեմ մղվող անհաշտ պայքարով։ Լենինը օպորտունիզմը համարել է բոլշևիզմի գլխավոր թշնամին բանվորական շարժման մեջ։

Աշխարհի ժողովուրդները գնալով ավելի և ավելի են համախմբվում կոմունիստական պարտիաների շուրջը, կազմակերպված դիմադրություն են ցույց տալիս ագրեսորներին ու շահագործողներին և իրենց ձեռքը վերցնում ազատության, խաղաղության պահպանման և ամրապնդման գործը։ Մարդկային հասարակության առաջխաղացման այդ հզոր պրոցեսը ծավալվում է լենինիզմի ամենահաղթ թեորիայի կենարար լույսի տակ։ Պրոլետարական մեծ գրող Մաքսիմ Գորկին նշել է, որ չնայած Վ. Ի. Լենինը մեռավ, բայց նրա բանականության ու կամքի ժառանգները կենդանի են ու գործում են աննախադեպ հաջողությամբ։ Եվ դա այն պատ-



ճառով, որ Լենինի հաջորդները գործում ու պայքարում են լենինիզմի դրոշով. «Աշխարհն սպասում էր այդ մարդուն. նա եկավ, ճանապարհ ցույց տվեց և այդ ուղիով մարդիկ կգնան մինչև վերջ՝ իրենց առաջ ունենալով անմահ առաջնորդի կերպարը»։

Լենինիզմի դրոշով կապիտալիզմի լծից արդեն ազատագրվել է աշխարհի ավելի քան 900 միլիոն բնակչություն։ Այդ նույն հաղթական դրոշով սոցիալական ու ազգային ազատություն ձեռք կբերեն նաև մնացած ժողովուրդները։ Ամենայն իրավամբ մեր դարաշրջանը սոցիալիզմի համար մղվող պայքարի դարաշրջան է, լենինիզմի գաղափարների հաղթանակի դարաշրջան։

Սովետական ժողովուրդը մեծագույն հանդիսավորությամբ և քաղաքական, տնտեսական ու կուլտուրական վերելքով նշելով անմահ Լենինի ծննդյան 87-ամյա տարեդարձը՝ լցվում է նոր խանդավառությամբ, և հետևելով մեծ առաջնորդի պատգամներին՝ անշեղորեն գնում է դեպի կոմունիզմի հաղթանակը։

# Ի ՊԱՏԻՎ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԻ

(Թվեր և փաստեր)

*Ռեսպուբլիկայի աշխատավորները լայնորեն ծավալում են սոցիալիստական մրցություն Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը աշխատանքային նոր հաջողություններով նշանավորելու համար։*

★ *Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել տարեկան արտադրական պլանը կատարել մինչև դեկտեմբերի 23-ը, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2 տոկոսով, տնտեսել 300 տոննա հումք, 500 տոննա վառելիք և 800 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ռացիոնալիզատորական առաջարկությունների միջոցով ստանալ 4,5 միլիոն ռուբլու խնայողություն, բարձրացնել 500 բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների որակավորումը, շահագործման հանձնել 3.100 քառակուսի մետր բնակելի տարածություն։*

★ *Այժմ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը պատվով է կատարում ստանձնած պարտավորությունները։ Չնայած ձմռան արտակարգ սառնամանիքների հետևանքով առաջացած դժվարություններին, կոլեկտիվը հունվար և փետրվար ամիսների արտադրական պլանները կատարել է 101 տոկոսով։ Գործարանում բոլոր գծերով գերակատարված են տրված առաջադրանքները։ Բարձր արտադրողականությամբ են աշխատում հատկապես 1—5, 1—7, 1—9 և 30—30 ցեխերը, որոնք սիստեմատիկաբար իրենց պլանները գերակատարում են 5—10 տոկոսով։*



★ *«Կանազ» գործարանի կոլեկտիվը պարտավորվել է համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարել 101,5 տոկոսով և մետաղի արտադրության պլանը՝ 101 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2,5 տոկոսով, տնտեսել 2 միլիոն ռուբլու հումք և տալ մեկ միլիոն ռուբլու գերպլանային շահույթ, շահագործման հանձնել 3.300 քառակուսի մետր բնակելի տարածություն։*

★ *Ստանձնած այդ պարտավորությունների կատարման համար «Կանազ» գործարանի կոլեկտիվը ջանք չի խնայում։ Գործարանի կոլեկտիվը ոչ միայն կատարեց անցած երկու ամսվա պլանները, այլև պլանից դուրս երկրին տվեց 225 հազար ռուբլու արտադրանք։ Նույն ժամանակաշրջանում գործարանի բանվոր-ծառայողներին ստացան չորս հարկանի բնակելի նոր շենք, որն ունի 970 քառակուսի մետր բնակելի տարածություն։*

★ *Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի Երևանի Հայէլեկ-*

այս գործարանի կոլեկտիվը պարտավորվել է ժամկետից շուտ կատարել տարեկան պլանը և պլանից դուրս երկրին տալ 10 միլիոն ռուբլու էլեկտրասարքավորում, շահագործման հանձնել 7.500 քառակուսի մետր արտադրական տարածությամբ նոր ցեխեր, յուրացնել երեք տիպի նոր կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայանների թողարկումը և այլն։

Հայէլեկտրոմեքենաշինարարները գերակատարել են հունվար և փետրվար ամիսների արտադրական պլանները և երկրին լրացուցիչ տվել տասնյակ էլեկտրական մեքենաներ։ Փետրվար ամսին պլանից դուրս երկիրն ստացավ 50 դիզելային շարժական էլեկտրակայան։ Մրցության բազմաթիվ առաջավորներ օրական կատարում են երկուսից երկուսուկես նորմա։

★ Երևանի Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը պարտավորվել է ոչ միայն տարեկան արտադրական պլանները կատարել ժամկետից շուտ, այլև տնտեսված հումքի և նյութերի հաշվին լրացուցիչ արտադրել 7.000 ավտոդող, անցյալ տարվա համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 7 տոկոսով, գործարկել երկու նոր ռետինախառնիչ, երկու գլան և այլ սարքավորումներ։ Բարձրացնել 310 բանվորի որակավորումը, շահագործման հանձնել 800 քառակուսի մետր բնակելի տարածություն։

★ Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը գերազանց ցուցանիշներով է կատարում իր ստանձնած պարտա-



վորությունները։ Գերակատարված են անցած երկու ամսվա արտադրական պլանները բոլոր ցուցանիշներով։ Հունվար ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարված է 105,4 տոկոսով, իսկ փետրվարինը՝ 101 տոկոսով։

★ Ձեթ-օճառի կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է տարեկան արտադրական պլանները գերազանց ցուցանիշներով կատարելու հետ միասին լրացուցիչ արտադրել 300 տոննա բուսական յուղ, 300 տոննա օճառ, 100 տոննա մարգարին։ Միաժամանակ տալ կես միլիոն ռուբլու գերպլանային խնայողություն։

★ Կոմբինատի կոլեկտիվը հավատարիմ իր խոստմանը, հենց տարվա սկզբից սկսեց կատարել և գերակատարել ստանձնած պարտավորությունները։ Հունվար և փետրվար ամիսների պլանը կատարված է 102,3 տոկոսով։

★ Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը պարտավորվել է տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 20-ին, 1956 թվականի արտադրության մակարդակը գերազանցել 24 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 5 տոկոսով, պլանից դուրս երկրին տալ մեկ միլիոն ռուբլու կուտակում, տնտեսել 200 տոննա վառելանյութ և 300 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և ռացիոնալիզատորական ու գյուտարարական առաջար-

կուլտուրաների կիրառումից ստանալ մեկ միլիոն 600 հազար ռուբլու օգուտ։

★ Ստանձնած պարտավորությունները կատարելու գործում արդեն աչքի ընկնող հաջողությունների է հասել գործարանի կոլեկտիվը։ Գործարանում հունվար և փետրվար ամիսների արտադրական պլանը կատարված է 103,8 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում արտադրանքի ինքնարժեքն իջել է 13 տոկոսով։ Միայն 0—1 ցեխը հունվար և փետրվար ամիսներին 340 հազար ռուբլու հումքի և նյութերի խնայողություն է տվել։

★ Կատարելով մրցությամբ ստանձնած պարտավորությունը, Երևանի Նուբար մահուդի ֆաբրիկայի կոլեկտիվը կարճ ժամանակում արտադրության մեջ ներդրել 15 նոր տիպի գործող դազգահ։ Նույն ցեխի նախապատրաստական բաժինը հաջողությամբ յուրացրել է փաթթման նորագույն մեքենան, որի շնորհիվ երկու անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Ֆաբրիկայում ստանձնած պարտավորությունները գերազանց ցուցանիշներով է կատարում ոլորման ցեխը, որը անցյալ տարվա 1.600 կիլոգրամի փոխարեն ամեն օր 2.200 կիլոգրամ թել է արտադրում։

★ Քաջարանի բաց հանքի կոլեկտիվը պարտավորվել էր տարեկան պլանը կատարել ժամկետից 10 օր շուտ, մոլիբդենի հանքաքարի հանույթի պլանը՝ 15 օր շուտ, հորատանցման աշխատանքների ինքնարժեքը



իջեցնել 20 տոկոսով, ռացիոնալիզատորական առաջարկության արմատավորումից ստանալ 200 հազար ռուբլու խնայողություն։

★ Այժմ Քաջարանի բաց հանքի կոլեկտիվը բոլոր գծերով կատարել և գերակատարել է հունվար և փետրվար ամիսների պլանները։ Ժամկետից 20 օր շուտ շահագործման է հանձնվել ՍԷ—3 հզոր էքսկավատորը, ավարտվել է երկու այլ էքսկավատորների նորոգումը, որոնք մասերի պակասության պատճառով երկու տարի չէին աշխատում։ Մրցության շատ առաջավորներ օրական մեկ ու կեսից մինչև երկու նորմա են կատարում։

★ Լենինականի դեպոյի կոլեկտիվը պարտավորվել է բոլոր տեսակի նորոգումների տարեկան պլանը կատարել նոյեմբերի 15-ին, յուրաքանչյուր ամիս տնտեսել 25 տոննա վառելանյութ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել չորս և ինքնարժեքն իջեցնել երեք տոկոսով, մինչև տարվա վերջը պլանից դուրս փոխադրել 200 հազար տոննա բեռ։

★ Դեպոյի մեքենավարները հունվար և փետրվար ամիսներին 200 ծանրաքաշ գնացք են վարել, նորմայից ավելի փոխադրելով 29 հազար տոննա բեռ։ Շոգեքարշայիններն այդ նույն ժամանակամիջոցում տնտեսել են 120 տոննա վառելանյութ։

# «ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ» ԺՈՂՈՎՐԴԻՆ ԽԱԲԵԼՈՒ ՄԻՋՈՑ Է

Մ. ՌՈՆԴԻՆԱ

Վերջին տարիներս կապիտալիստական մի շարք երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, բուրժուական գիտնականները և հրապարակախոսները ուժեղ կերպով պրոպագանդում են այսպես կոչված «ժողովրդական կապիտալիզմի» տեսությունը։ Այդ «տեսության» համաձայն անցյալ դարերի հին կապիտալիզմը ներկայումս իբր թե կորցրել է իր շահագործողական էությունը և վեր է ածվել բոլորովին նոր կապիտալիզմի, որի նպատակն է ժողովրդի բարեկեցության մասին հոգատարությունը։ Կապիտալիզմը ինչ-որ հրաշագործությամբ «ժողովրդական կապիտալիզմի» «տրանսֆորմացիայի» ենթարկվելու (վերածվելու) մասին այդ կարգի հոդվածները այժմ չեն պակասում բուրժուական թերթերի և ամսագրերի էջերից։



«Ժողովրդական կապիտալիզմի» մասին առասպելը վերջին ժամանակներս ԱՄՆ-ում, ըստ էության, դարձել է պետական պաշտոնական դոկտրինայի նման մի բան։ Նա լայնորեն ռեկլամի էր ենթարկվում ռեսպուբլիկական պարտիայի ականավոր գործիչների ելույթներում 1956 թվականի ընտրական կամպանիայի ընթացքում։ Մասնավորապես, ԱՄՆ-ի վիցեպրեզիդենտ Ռ. Նիկսոնը պնդում էր, որ ԱՄՆ-ում «վրա է հասնում նոր, «ժողովրդական կամ սպառողական կապիտալիզմի» ժամանակաշրջանը, երբ աղքատությունը լիովին կվերանա»։ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրի նախկին տեղակալ Լարսոնի «Ռեսպուբլիկականի հայացքը իր պարտիայի վրա» գրքում, որը հավանության է գտել էյզենհաուերի կողմից, «նոր ռեսպուբլիկանիզմ» անվան տակ նույնպես պրոպագանդվում է «ժողովրդական կապիտալիզմի» գաղափարը։

«Ժողովրդական կապիտալիզմի» մասին վերսիայի լայն պրոպագանդան պատահական երևույթ չէ։ Նա պայմանավորված է այն արմատական փոփոխություններով, որոնք տեղի են ունեցել աշխարհում, XX դարում։ Կապիտալիզմի ծագման դարաշրջանին փոխարինել է նրա անկման ժա-

մանակաշրջանը։ Վրա է հասել բուրժուական աշխարհի վերջալույսը։ Կապիտալիզմին փոխարինելու է եկել նոր, ավելի առաջավոր հասարակական կարգը՝ սոցիալիզմը։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմը վեր է ածվել տնտեսության համաշխարհային սիստեմի։ Ինքը՝ կյանքը ժխտեց կապիտալիստական կարգերի պաշտպանների գլխավոր թեզիսը՝ կապիտալիզմի հավիտենականության և առաջադիմության մասին թեզիսը։ Այդպիսի պայմաններում ռեակցիոն բուրժուական գաղափարախոսները ստիպված էին փնտրել կապիտալիզմի պաշտպանության նոր միջոցներ։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները այժմ այնքան են ակնհայտ, իսկ ժողովրդական մասսաների ձգտումը դեպի սոցիալիզմ այնքան է մեծ, որ ռեակցիոն գաղափարախոսները ստիպված են կապիտալիզմին վերագրել այնպիսի գծեր, որոնք իրականում հատուկ են տնտեսության միայն սոցիալիստական սիստեմին, օրինակ, արտադրության միջոցների նկատմամբ հանրային սեփականությունը, շահագործման բացակայությունը, անճգնաժամային զարգացումը, ժողովրդի



կենսամակարդակի անշեղ բարձրացումը և այլն։ «Ժողովրդական կապիտալիզմի» լեգենդի հանդես գալը ինքնըստինքյան համոզիչ կերպով վկայում է տնտեսության կապիտալիստական սիստեմի ճգնաժամի և այդ սիստեմի պաշտպանների ծանր վիճակի մասին։

«Ժողովրդական կապիտալիզմի» քարոզիչները շատ են աղմկում ակցիոներական ընկերությունների էության և դերի մասին, պնդելով, ինչպես այդ անում է, օրինակ, ամերիկյան տնտեսագետ Ա. Բեռլին, որ իբր թե Միացյալ Նահանգներում տեղի է ունեցել «սեփականության ռևոլյուցիա, որը նշանավորվում է կապիտալի կոլեկտիվացում կորպորացիաներում»։ Բեռլիի խոսքերով, կապիտալիստական մոնոպոլիաների գործունեության որոշիչ մոտիվները իբր թե ամբողջ հասարակության շահերն են, իսկ նրանց ակցիոներները՝ ԱՄՆ-ի բնակչության գերակշռող մասը։ Այդ գաղափարն է քարոզում նաև հայտնի ամերիկյան կապիտալիստ Էրիկ Ջոնստոնը իր «Անսահմանափակ Ամերիկան» գրքում։ Նա գրում է. «Ֆերմերները, վարպետները, սովորական բանվորները հանդիսանում են կապիտալիստներ, քանի որ նրանցից տասնյակ միլիոնավոր-

ները ունեն արժեթղթային վկայականներ, առանձին ընկերությունների մի քանի ակցիաներ, իսկ բանկերում նրանց խնայողությունները ներդրված են գործարար ձեռնարկություններում»: Այստեղից է. Ջոնստոնը եզրակացություն է հանում, թե ամերիկյան կապիտալիզմը՝ դա «ժողովրդական կապիտալիզմ է», որովհետև «յուրաքանչյուրն ունի իր բաժինը կապիտալիզմի մեջ»:

Եթե Բեռլին հայտարարում է, թե «կապիտալիստները անհետանում են», ապա Ջոնստոնը ընդհակառակը, պնդում է, թե «բոլորն են դառնում կապիտալիստներ»: Այդ դատողությունների նպատակը միևնույն է՝ գեղազարդել ամերիկյան կապիտալիզմը, քողարկել մոնոպոլիաների գերիշխանությունը, շեղել աշխատավորներին կապիտալի իշխանության դեմ, սոցիալիզմի համար պայքար մղելուց:

Բոլոր այդ և դրա նման «տեսությունները» աղաղակող հակասության մեջ են գտնվում իրականության հետ: ԱՄՆ-ի ֆեդերալ ռեզերվային վարչության կողմից սպառողների ֆինանսական վիճակի 1949 թվականին կատարված հետազոտությունը ցույց է տվել, որ ԱՄՆ-ի բոլոր ընտանիքների միայն 8 տո-



կոսն էր հանդիսանում ակցիաների տերեր, իսկ 92 տոկոսը ակցիաներ չուներ: Ինչպես նշվում է «Էկոնոմիկ նոուտս» բյուլետենում, 1956 թվականին ակցիաներ ունեցող ընտանիքների տոկոսը մնացել է 1949 թվականի մակարդակին, այսինքն առաջվա պես կազմում է 8 տոկոս:

Է. Ջոնստոնը կատեգորիկ կերպով հայտարարում է, իբր թե «իմ գործարաններից որևէ մեկի ամենաաղքատիկ բանվորը, այն բանկի քարտուղարը, որի դիրեկցիայի մեջ մտնում եմ նաև ես, իմ աղյուսի գործարանի ծառայողը— դրանք բոլորն էլ պակաս կապիտալիստներ չեն, քան ես»: Բայց եթե առանձին բանվորներ և ծառայողներ նույնիսկ ունեն էլ մի քանի ակցիաներ և արժեթղթային վկայականներ, ապա դրա շնորհիվ նրանք երբեք էլ կապիտալիստներ չեն դառնում: Ակցիոներական ձեռնարկությունների տերեր միշտ էլ եղել և մնում են ոչ թե բանվորները և մանր ծառայողները, այլ նրանք, ովքեր Է. Ջոնստոնի նման մտնում են ընկերությունների դիրեկցիաների մեջ: Դրանք ամերիկյան խոշորագույն մոնոպոլիստներն են: Նրանք իրենց ձեռքում են պահում շատ ակցիոներական ընկերությունների ակցիաների վերահսկիչ պակետները, որի շնորհիվ

կարող են տնօրինել այնպիսի կապիտալներ, որոնք մի քանի անգամ գերազանցում են իրենց սեփականը։ ԱՄՆ-ի մի քանի ամենահզոր ֆինանսական խմբերը (մորգանների, ռոկֆելլերների, դյուպոնների և մյուսների ընտանիքները) վերահսկում են ԱՄՆ-ի արտադրության բոլոր կարևորագույն ճյուղերը, ստանալով անընդհատ աճող շահույթներ։ Ակցիաների վաճառքը և նրանց սպեկուլյացիան ֆոնդային բիրժայում փաստորեն ծառայում են ֆինանսական կապիտալի մագնատների հարստացմանը։ Սակավաթիվ ակցիաներ ունեցողները, որպես կանոն, միշտ զոհ են գնում բիրժայական սպեկուլյացիային։ Ակցիոներական ընկերությունների աճը տանում է ոչ թե դեպի «կապիտալի դեմոկրատացում», ինչպես պնդում են բուրժուական տնտեսագետները, այլ նրա կենտրոնացում, ֆինանսական կապիտալի մի խումբ իշխանների ձեռքում համակենտրոնացում։ Մերկացնելով «կապիտալի դեմոկրատացման» տեսությունը, Լենինը գրում էր. «Կապիտալիզմի պաշտպան պրոֆեսորները, տեսնելով մանր ակցիոներների թվի աճումը, շաղակրատում են սեփականատերերի թիվն ավելանալու մասին։ Իսկ իրականում աճում



է տուզ-միլիարդատերերի իշխանությունը (և եկամուտը) «մանրերի» կապիտալի վրա»։

1956 թվականին ամերիկյան մամուլում աղմուկ բարձրացվեց Հենրի Ֆորդի ընտանեկան ավտոմոբիլային կոնցերնը ակցիոներական ընկերության վերածելու կապակցությամբ։ Բուրժուական մամուլը այդ երևույթը բնութագրում էր որպես «հին կապիտալիզմի վերջին միջնաբերդի անկում» և նոր քայլ «ժողովրդական կապիտալիզմի» ուղղությամբ։ Բայց այդ «վերածումից» հետո էլ Ֆորդի ձեռնարկություններում ոչինչ չփոխվեց, իսկ ինքը՝ Ֆորդը առաջվա պես ստանում է միլիոնների հասնող շահույթներ, բայց այժմ միայն որպես ակցիոներական ընկերության պրեզիդենտ։

«Ժողովրդական կապիտալիզմի» քարոզիչների սիրած թեմաներից մեկը այսպես կոչված «շահույթների ռևոլյուցիայի» մասին պնդումներն են։ Ամերիկյան տնտեսագետ Ս. Կուզնեցը «Բարձր եկամուտներ ունեցող խմբերի բաժինը եկամուտներում և խնայողություններում» վերնագիրը կրող իր գրքում խեղաթյուրելով վիճակագրական տվյալները, փորձում է ապացուցել, թե իբր կապիտալիստները աստիճանաբար դառնում են աղքատ, իսկ բանվորները՝ հարուստ։ «Ցու-

նայտեդ Ստեյտս նյուս էնդ Ուորլդ Ռիպորտ» ամսագրում 1956 թվականի հոկտեմբերին տպագրվեց մի հոդված «Բոլո՞րն են ԱՄՆ-ում հարուստ» վերնագրով, որտեղ նույնպես քարոզվում է «եկամուտների հավասարեցման» տեսությունը։ Այդ հոդվածի հեղինակները պնդում են, որ իբր թե ԱՄՆ-ում «պատմության նախորդ ժամանակաշրջանում բարձր և ցածր եկամուտներ ստացողների կենսամակարդակի տարբերությունը երբեք այսպես աննշան չի եղել»։

Սակայն փաստերը ցույց են տալիս, որ բուրժուական տնտեսագետների կողմից ռեկլամի ենթարկվող «եկամուտների հավասարեցման» փոխարեն, հարուստների և աղքատների միջև եղած անդունդը ԱՄՆ-ում է՛լ ավելի է մեծացել։ Ինչպես վկայում է «Էկոնոմիկ նոուտս» բյուլետենը, 1948 թվականից մինչև 1956 թվականը ընկած ժամանակամիջոցում ԱՄՆ-ի կորպորացիաների շահույթները աճել են 29 տոկոսով, իսկ ամերիկյան ֆերմերների եկամուտները իջել են 42 տոկոսով։

Եկամուտների մակարդակի մեջ է՛լ ավելի ապշեցուցիչ կոնտրաստ է ցույց տալիս կապիտալիստների եկամուտների և բանվորների աշխատավարձի չափերի համեմատումը։



Ահա մի բնորոշ օրինակ։ Էլեկտրիկների առաջադիմական արհմիությունը տվյալներ է բերում այն մասին, որ «Վեստինգհաուզ էլեկտրիկ կոմպանիի» տերեր Ջո և Ջոզեֆինա Վեստինգհաուզները 1952 թվականին ստացել են 466 միլիոն 631 հազար դոլար, իսկ ամերիկյան բանվորի միջին աշխատավարձը այդ նույն ժամանակ կազմել է 3.848 դոլար։

Սովորաբար, գործի էությունը քողարկելու համար բուրժուական տնտեսագետները օգտագործում են այսպիսի ձև. նրանք ամերիկյան բոլոր խոշորագույն կապիտալիստական ընտանիքների, այդ թվում նաև ռոկֆելլերների, դյուպոնների, մորգանների, վեստինգհաուզների և մյուսների ընտանիքների եկամուտները բաժանում են ԱՄՆ-ի ընտանիքների ընդհանուր թվի վրա։ Հասկանալի է, որ այդ դեպքում մեկ ընտանիքին ընկնող եկամտի միջին թիվը կաճի, բայց ակնհայտ է նաև այն, որ ամերիկյան բանվորները փաստորեն այդ եկամուտները չեն ստանում։

Գելլերի կոմիտեի հաշվումներով, 1954 թվականին 4 հոգուց բաղկացած ամերիկյան ընտանիքը պահելու համար տարեկան պահանջվում էր 5335 դոլար, իսկ ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության մեջ աշխատող բանվորի տարեկան միջին աշխատավարձը

այդ նույն թվականին կազմել է 3.737 դոլար, այսինքն՝ փաստորեն հասել է կենսական մինիմումի միայն 70 տոկոսին։ Էլ ավելի ցածր են նեգրական ընտանիքների եկամուտները։ Նեգր բանվորի միջին աշխատավարձը կազմում է սպիտակամորթ բանվորի աշխատավարձի միայն 52 տոկոսը։

«Ժողովրդական կապիտալիզմի» պրոպագանդիստները լռում են գործազուրկների դրության մասին։ Իսկ նրանց թիվը նույնիսկ պակասեցված պաշտոնական տվյալներով, ԱՄՆ-ում հասնում է 3 միլիոնի։ Բացի դրանից, երկրում կան միլիոնավոր բանվորներ, որոնք ոչ լրիվ են զբաղված շաբաթվա ընթացքում։ Բնորոշ է, որ ամերիկյան բուրժուական տնտեսագետները գործազրկությունը նորմալ երևույթ են համարում, պնդելով թե որպես մինիմում երկրում պետք է ունենալ 2—3 միլիոն գործազուրկ։

«Ժողովրդական կապիտալիզմի» քարոզիչները պնդում են այսպես կոչված «պետության տնտեսական ֆունկցիաներում կատարված ռևոլյուցիայի» մասին, որը իբր թե տեղի է ունեցել 20-րդ դարում։

Հաճախակի բուրժուական պետությանն է հենց վերագրվում ամերիկյան կապիտալիզմը «ժողովրդական կապիտալիզմի» «վերա-



փոխելու» ծառայությունը։ Այսպիսի տեսակետ է արտահայտված «Ֆորչուն» ամսագրի հոդվածում, որտեղ ամերիկյան կապիտալիզմի պատմության մեջ շրջադարձային կետ է համարված մոնոպոլիաների սահմանափակման մասին Շերմանի օրենքի ընդունումը ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից։ Իրականում այսպես կոչված Շերմանի «հակատրեստային» օրենքը, ինչպես և դրա նման մյուս օրենքները, մնացին թղթի վրա. դրանք չխանգարեցին, և չէին էլ կարող խանգարել մոնոպոլիաների աճմանը։ Դրանք այլ նպատակ էին հետապնդում՝ խաբել աշխատավորներին, որոնք կտրուկ բողոքով հանդես էին գալիս մոնոպոլիաների թալանչիական, հակաժողովրդական քաղաքականության դեմ։

Ժամանակակից Ամերիկայում պետությունը լրիվին գտնվում է մոնոպոլիաների ծառայության մեջ։ ԱՄՆ-ի կառավարությունում ղեկավար պոստերը գրավում են խոշոր սեփականատերերը, երկրի գլխավոր ֆինանսական խմբերի դրածոները։ Բավական է նշել, որ ԱՄՆ-ի կառավարության մեջ պետական քարտուղարի (արտաքին գործերի մինիստրի) պոստը զբաղեցնում է Ջ. Ֆ. Դալլեսը՝ Մորգանի և Ռոկֆելլերի ընկերությունների միջազգային գործերը վարող խո-

շորագույն փաստաբանական ֆիրմայի Նյու-Յորքի ներկայացուցիչը։ ԱՄՆ-ի ֆինանսների մինիստրն է Դ. Մ. Խեմֆրին, Կլիվլենդ քաղաքի մոնոպոլիստական խմբի գործիչը, որը նշանակալից կապիտալ ներդրումներ ունի ծանր և ռազմական արդյունաբերության մեջ, պաշտպանության մինիստրն է Չ. Վիլսոնը՝ «Ջեներալ մոտորս» ընկերության նախկին պրեզիդենտը, առևտրի մինիստր՝ Ս. Ուիկսը, ամերիկյան խոշորագույն բանկերից մեկի՝ «Ֆերստ նեյշնլ բենկ օֆ Բոստոն» բանկի նախկին դիրեկտորն է և այլն։

1954 թվականին ԱՄՆ-ի կառավարությունը վերացրեց գերշահույթներից գանձվող հարկերը. 91 տոկոսով իջեցվեցին կորպորացիաներից և աշխատավորների հաշվին մեծ եկամուտներ ստացող անձնավորություններից գանձվող հարկերը։ Կապիտալիստական հասարակարգի թալանչիական, շահագործողական էության բոլոր այդ և մյուս դրսևորումները քողարկելու համար է կոչված ԱՄՆ-ում և մի քանի այլ կապիտալիստական երկրներում մեծ աղմուկով տարածվող «ժողովրդական կապիտալիզմի» մասին պրոպագանդան։

---



# ՆՈՐ ՄԵՔԵՆԱՆԵՐ

Լենինգրադի «Վուլկան» գործարանը վերջերս յուրացրել է «ՄՍԳՊ» մոդելով տրիկոտաժային մեքենաների թողարկումը։ Այդ մեքենաներով գործվելու է սպիտակեղենի տրիկոտաժ, որի երեսի կողմը՝ լինելու է մետաքսյա, իսկ մյուս կողմը՝ բամբակյա։ Մեկ հերթափոխության ընթացքում մեքենայի արտադրողականությունը կազմում է 80—90 կիլոգրամ։ Նոր մոդելի այս մեքենան փոխարինում է «ՄՏ» մարկայի 7 մեքենայի։

## ԱՆՁՐԵՎԱՅԱՆ ՄԵՔԵՆԱ ԴԿ-200

Գյուղատնտեսական մեքենաշինության Համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտը ավարտել է ջրառոգումը մեխանիզացման ենթարկելու բարձր արտադրողականություն ունեցող ԴԿ—200 մեքենայի մշակումը։

Մեքենան հարմարեցվում է Ս—8 տրակտորի վրա։ Նրա կենտրոնախույս նասոսը գործի է դրվում տրակտորային շարժիչի միջոցով։ Ջուրը մեքենայի մեջ ստացվում է ոռոգման համար ժամանակավոր ջրանցքներից՝ նասոսի ներծծող խողովակի միջոցով։ Անց-

նելով կենտրոնական նասոսով, ջուրը լցվում է խողովակների մեջ, որից հետո ցնցուղաձև տարածվում շրջապատում։

Մեկ վայրկյանում մեքենան ծախսում է 200 լիտր ջուր։ Նա ընդունակ է ջրելու 130×25 մետր չափով մի տարածություն, որից հետո առանց դադարեցնելու գործողությունը անցնում է հետևյալ տարածությունը։ ԴԿ—200 մեքենան 300 խորանարդ մետր նորմայի դեպքում մեկ ժամում կարող է ջրել 2 հեկտար, իսկ օրվա մեջ 20 ժամյա աշխատանքի ընթացքում՝ 40 հեկտար։ Մեքենան լրիվին մեքենայացման է ենթարկում ջրոռոգումը, աշխատանքի արտադրողականությունը ավելացնում է 10—20 անգամ, բարելավում է ոռոգման ագրոտեխնիկական ցուցանիշները։

Ոռոգման նորմաները պետք է խստորեն հարմարեցնել բույսի՝ ջրի նկատմամբ ունեցած պահանջի հետ։ Դրա շնորհիվ վերանում է ջրի ավել ծախսումը և ճահճակալման ու աղակալման վտանգը ոռոգման ենթակա տեղամասերում։

Մեքենան նախատեսվում է մեծ մասսիվների՝ մինչև 300—400 հեկտար տարածություն ունեցող դաշտամասերի վրա աշխատելու համար։

## ԿԱՈՒՉՈՒԿԵ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ

Ճանապարհները ծածկելու համար սովորաբար գործածում են բետոն, ասֆալտ, խիճ, ավազ և այլն։ Սակայն վերջերս ԱՄՆ-ում ավելի քան 50 և Անգլիա-



յում 60 ճանապարհ ծածկվել են կաուչուկով։ Դրա առավելությունն այն է, որ կաուչուկի և բիտումի խառնուրդը լավ է դիմանում ջերմաստիճանի տատանումներին, ճեղքվածքներ չի տալիս և ռետինե դողերը ավելի ուշ են մաշվում քան սովորական ճանապարհների վրա։

## ԱՐԵՎԻ ԷՆԵՐԳԻԱՅՈՎ ԱՇԽԱՏՈՂ ՀԵՌԱԽՈՍ

Վերջերս ԱՄՆ-ում փորձնական շահագործման են հանձնվել հեռախոսային գծեր, որոնք իրենց էներգիան ստանում են ոչ թե գեներատորներից կամ գալվանական մարտկոցներից, այլ արևից։ Կապի այդ գծերը սնում են 432 ֆոտոէլեմենտներից բաղկացած մարտկոցները, որոնցից ամեն մեկը մի մետաղե դրամի չափ է, որոնք տեղադրված են իրարից որոշ հեռավորության վրա գտնվող հեռախոսային սյուներին։ Որպեսզի կապը գիշերը չընդհատվի, էներգիայի ավելցուկը պահեստավորվում է ակումուլյատորներում, որոնք ամրացված են հենց այնտեղ։

## ՏԵՐՖԱՆ

Ֆրանսիական քիմիկոսները ստեղծել են մի նոր, զարմանալի նյութ։ Դա այսպես կոչված տերֆանն է, որը պատրաստել է «Ցելլոֆան» ընկերությունը։ Տերֆանի ամրությունը հավասար է պողպատի





մեկ երրորդ ամրությանը, միաժամանակ նա վերին աստիճանի ճկուն է և ապակու նման թափանցիկ։ Նա ունի քիմիական մեծ կայունություն՝ նրա վրա չեն ներգործում թթվուների մեծամասնությունը և այլ քայքայիչ նյութերը։ Իր յուրահատկությունը տերֆանը պահպանում է ջերմաստիճանի մեծ տատանումների՝ մինուս 70 և պլյուս 150 աստիճանի ժամանակ։

Տերֆանը կարող է լայն գործածություն գտնել տեխնիկայի և կենցաղի մեջ։ Ծանրություններ բարձրացնելու ժամանակ սովորական պողպատե շղթաների փոխարեն օգտագործում են տերֆանի ժապավեն։ Այդ ժապավենով օրինակ նավի վրա ավտոմեքենաներ բեռնելիս կամ բեռնաթափելիս շնորհիվ տերֆանի փափկության, մեքենաները ոչ մի քերծվածք կամ տրորվածք չեն ստանում։

## ԱՄԵՆԱԽՈՐ ՆԱՎԹԱՀՈՐԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Մեքսիկական ծովածոցի մոտ, Միսիսիպի գետի դելտայում «Ռիչարդսոն էնդ Բեսս» նավթահանքերում փորվել է աշխարհի ամենախոր նավթահորը։ Նրա խորությունը հասնում է 6.885 մետրի, որը 333 մետրով ավելի է, քան Կալիֆորնիայում մինչև այսօր ռեկորդային համարվող նավթահորը։ Ջերմաստիճանը այս նոր նավթահորի հատակում հասնում է 180 աստիճանի։ 6.885 մետրից հետո փորման աշխատանքները դադարեցվել են, որովհետև նավթահորը սկսել է շատրվան խփել, օրվա ընթացքում տալով 24 տոննա նավթ։ Նավթահորը փորվել է 14 ամսում։

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**

# БЛОКНОТ АГИТАТОРА

**№ 7** **1957 г.**

*ՎՖ 05742* *Պատվեր 310* *Տիրաժ 8.560*

---

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։